ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 18 ՍԵՊՏԵՄԲԵՐ 1955

ОБЯЗАТЕЛЬНЫЙ
ЭКЗЕМПЛЯР

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս 2—52—78։*

1504



# ԶՐՈՒՅՑ ԱՇՆԱՆԱՑԱՆ ՑՈՐԵՆԻ ԲԱՐՁՐ ԲԵՐՔ ՍՏԱՆԱԼՈՒ ՄԱՍԻՆ

## ՊՐՈՖ. Գ. ԱՂԱՋԱՆՅԱՆ

*Պարտիան ու կառավարությունը միշտ էլ ընդգծել են աշնանացան ցորենի կարևորությունը։ Մեծ է աշնանացան ցորենի դերը գյուղատնտեսության վերելքի և հացահատիկի համախառն բերքի ավելացման վերաբերյալ պարտիայի ու կառավարության առաջադրանքների կատարման գործում։*

*Մեր ռեսպուբլիկայում աշնանացան ցորենը բոլոր մնացած հացահատիկային կուլտուրաների մեջ բռնում է առաջին տեղը։ Աշնանացան ցորենը ավելի բարձր բերք է տալիս, քան գարնանացան ցորենը, քան գարնանացան գարին և մյուս հասկային կուլտուրաները։ Այդ կուլտուրայի լայն արմատավորման արդյունքը կլիներ ոչ միայն բարձր, այլև ավելի կայուն բերքի ստացումը։*

*Այս տարի հազարավոր օղակներ, դաշտավարական բրիգադաներ և տասնյակ կոլտնտեսություններ իրավամբ կարող են*






1818-55

հպարտանալ իրենց ազնիվ աշխատանքի հիանալի արդյունքներով՝ աշնանացան ցորենի բարձր բերքով։ Այդ օղակներում, բրիգադներում և կոլտնտեսություններում աշնանացան ցորենի միջին բերքը, յուրաքանչյուր հեկտարից, հասնում է 25—30 ցենտների։ Դա արդյունք է հողագործության կուլտուրայի անշեղ աճման, գյուղատնտեսության մեքենայացման բարձր մակարդակի, որի շնորհիվ խիստ բարձրացել է հողի մշակման որակը։

Հողի բերրիությունը բարձրացնելու և կայուն ու բարձր բերք ապահովելու գործում հսկայական նշանակություն ունի հողերի պարարտացումը։ Կոլտնտեսությունները պետք է սիստեմատիկորեն պարարտացնեն աշնանացան ցորենի դաշտերը, որովհետև ամեն տարի և ճիշտ կատարվող պարարտացումը սննդանյութերի անհրաժեշտ պաշար է ստեղծում հողում։

Աշնանացան ցորենի բերքատվության բարձրացման ամենակարևոր միջոցառումներից մեկն էլ այն է, որ ցանքը կատարվի մաքուր, կուլտուրական ցելերի վրա, որոնք միշտ պետք է զերծ լինեն մոլախոտերից և գտնվեն փուխր վիճակում։ Ցելերի մշակու-



թյունը պետք է կատարվի ոչ միայն շրջանի, այլև տվյալ հողամասի կոնկրետ պայմաններին լիովին համապատասխան (մշակությունների թիվը, ժամկետները, խորությունը, մշակման գործիքները և այլն), որովհետև միայն այդ դեպքում կարելի է հուսալ, որ դաշտերը լիովին մաքուր կլինեն մոլախոտերից և ցելը կարդարացնի իրեն։ Շատ կարևոր է, որ յուրաքանչյուր անգամ փխրեցումը կատարվի որոշակի խորությամբ, ընդորում՝ նախացանքային փխրեցումը կատարվի 5—7 սանտիմետր խորությամբ, այսինքն՝ այն խորությամբ, ինչ խորությամբ ցանվելու են սերմերը։ Դա անհրաժեշտ է նրա համար, որ սերմերը հողում ընկնեն ամուր հատակի վրա և շուտ ծլեն-գետնի երես դուրս գան։

Աշնանացան ցորենի բարձր բերք ստանալու մի շատ կարևոր պայման է ոչ ցելային հողերի անհապաղ հերկումը։ Անհրաժեշտ է, առանց մեկ օր կորցնելու, կոմբայնային բերքահավաքից անմիջապես հետո դիզել ծղոտը, խրձերը դուրս տանել դաշտից և անհապաղ վարել այն հողերը, որտեղ աշնանացան է արվելու։

Ցելերի վարը կամ կրկնավարը խոնավ

շրջաններում անհրաժեշտ է ավարտել ցանքից ոչ ուշ, քան 15—20, իսկ չորային շրջաններում՝ 25—30 օր առաջ։

Այն դեպքերում, եթե դաշտը հիմնական ցելի ժամանակ չի պարարտացվել, անհրաժեշտ է այն պարարտացնել կրկնավարից կամ ցելավարից առաջ և պարարտանյութերը հողի մեջ մտցնել վարաշերտի ամբողջ խորությամբ։

Բարձր և կայուն բերք ապահովելու մյուս կարևոր պայմանը՝ աշնանացանի համատարած սորտային ցանքերի անցնելն է։ Ամբողջ ցանքը պետք է կատարել շրջանացված լավագույն սորտերի սերմերով։ Անհրաժեշտ է տվյալ շրջանի, տվյալ կոլտնտեսության համար առավել բերքատու աշնանացան ցորենի սորտային սերմերով կատարված բոլոր ցանքերը հաշվի առնել և դրանց բերքը օգտագործել բացառապես որպես սերմացու։ Արգավանդ հողում ագրոտեխնիկայի կանոնների ճիշտ պահպանմամբ աճեցված սերմերը բարելավում են իրենց տոհմային հատկությունները և դրանք փոխանցում ժառանգաբար։

Ցանքի համար առանձնացված սերմացուն պետք է լինի կոնդիցիոն, մաքուր։ Սերմի մեջ չպետք է լինեն ծլած, նեխած, տափա-



կած, ջարդված հատիկներ։ Այն սերմերը, որոնց մեջ կան կարանտինային մոլախոտեր, ամենևին չպետք է թույլատրվեն ցանելու համար։ Ցանքի համար նախատեսված սերմերը պետք է ունենան բարձր ծլունակություն, լինեն լիակշիռ, իրար հավասար, այսինքն՝ արտաքին տեսքով և խոշորությամբ միանման։ Սերմացուն իսպառ զերծ պետք է լինի որևէ հիվանդության սաղմից և վարակված չլինի։

Մրիկի սպորների ոչնչացման համար՝ սերմացուն պետք է ախտահանել։ Ախտահանման համար կարելի է օգտագործել ֆորմալին, ԱԲ պրեպարատ, գրանոզան և այլ նյութեր։

Աշնանացանի բարձր բերքն ապահովող առավել կարևոր միջոցառումների թվին պետք է դասել նաև ցանքի ճիշտ ժամկետների սահմանումը։ Դա ապացուցված է ինչպես արտադրական պրակտիկայի տվյալներով, այնպես էլ փորձնական հետազոտությունների արդյունքներով։ Աշնանացան ցորենի ցանքի ժամկետները սահմանելիս անհրաժեշտ է հաշվի առնել յուրաքանչյուր շրջանի կլիմայական պայմանները, աշնան եղանակների բնույթը ցանքի կատարման ժամանակաշրջանում, և հատկապես սորտի

ու հողի առանձնահատկությունները, հողամասի դիրքը և այլն։

Տարբեր ժամկետներում ցանված աշնանացան ցորենի ցանքերի նկատմամբ մեր կատարած դիտումները ցույց են տալիս, որ օպտիմալ ժամկետներում ցանված աշնանացան ցորենը մինչև ձմեռային ցրտերի սկսվելը փնջակալում է, ուժեղ արմատներ արձակում և անհրաժեշտ սննդանյութերի պաշար կուտակում, որի շնորհիվ աշնանացան ցորենի բույսերը գարնանը շուտ են բոյ քաշում, ուստի և լավ են օգտագործում հողում եղած ջուրն ու սննդարար նյութերը։ Աշնանացան ցորենի հասկակալումը, հասունացումը և բերքահավաքը նույնպես տեղի են ունենում ավելի վաղ ժամկետում, մի բան, որ Հայաստանի շատ շրջաններում վճռական նշանակություն ունի բարձր ու կայուն բերքի ապահովման գործում։

Չորային շրջաններում ցանքի վաղ ժամկետների դրական նշանակությունը չի սահմանափակվում միայն հողի խոնավության լավագույն օգտագործմամբ և բույսերի կյանքի պայմանների բարելավմամբ։ Այստեղ, չորային տարիներին, վաղ ժամկետներում ցանված ցորենը ուշ ցանված ցորենից 12—15 օր շուտ է հասունանում և այդ պատճա-



ռով էլ չի ենթարկվում խորշակների կործանարար ազդեցությանը։ Հակառակ պատկեր է նկատվում ուշ ցանված հողամասերում, որտեղ հացաբույսերը տուժում են երաշտից և ցածր ու անորակ բերք են տալիս։

Մեր փորձերը ցույց են տալիս, որ աշնանացան ցորենի ցանքերը խիստ տուժում են, ինչպես ցանքը ուշացնելու, այնպես էլ շատ վաղ կատարելու դեպքում։ Չափազանց վաղ ցանելու և բնական պայմանների համապատասխան կոմբինացիայի դեպքում աշնանացան ցորենի բույսերը գերաճում են, անցնում յարովիզացիայի ստադիան և կործանվում ձմռանը։

Շատ վաղ ժամկետներում կատարված աշնանացան ցորենի ցանքերին շոշափելի վնաս են հասցնում ժանգը և որոշ վնասատուներ։

Ցանքի ժամկետներն ուշացնելու դեպքում բույսերը գարնանը սովորաբար դանդաղ են աճում և բերքատվությունը, նորմալ ժամկետներում կատարված ցանքերի համեմատությամբ, 50 և ավելի տոկոսով ցածր է լինում։

Մեր մի շարք տարիների փորձի տվյալներով, օպտիմալ ժամկետներում ցանված աշնանացան ցորենի փնջերի փշացումը գար-

նանը կազմում է 10—15 տոկոս, իսկ ուշ ցանածներինը՝ 20—50 տոկոս։

Փորձի և պրակտիկայի տվյալների հիման վրա աշնանացանի օպտիմալ ժամկետներ պետք է սահմանվեն յուրաքանչյուր շրջանի և յուրաքանչյուր սորտի համար։ Եթե բարձր լեռնային շրջաններում աշնանացանը կարելի է կատարել օգոստոսի 2-րդ կեսին, ապա միջին լեռնային շրջանների մեծամասնությունում աշնանացանի կատարման լավագույն ժամկետ կարող է լինել սեպտեմբեր ամիսը։

Հատուկ ուշադրություն պետք է դարձվի նաև ցանքի համար առավել ընդունելի նորմաներ սահմանելուն։ Աշնանացան ցորենի ցանքի նորման սահմանելիս պետք է ելնել մեկ հեկտարի վրա ցանվող սերմերի անհրաժեշտ քանակից կամ բացարձակ քաշից։ Պարզ է, որ նորման որոշելիս անհրաժեշտ է հաշվի առնել նախորդների որակը և յուրաքանչյուր հողամասի վիճակը։ Մենք առաջարկում ենք աշնանացան ցորենի Կարմիր Ալֆահատ, Ուկրաինկա, Ջարդա, Արմյանկա, Սպիտակահատ, Արտաշատի 42 սորտեր ցանելիս, յուրաքանչյուր հեկտարի վրա ցանել միջին հաշվով 5—5 $1/2$ միլիոն հատիկ, պայմանով, որ սերմացուի հատիկները լի-



նեն ընտիր, խոշոր, ծանրակշիռ ու լեցուն։ Խոզանացան տարածություններում, որտեղ նման պայմանները ցել արված հողամասերի համեմատությամբ վատ են, ցանքի նորման պետք է բարձրացնել 5—8 տոկոսով։ Ճարահերկ կուլտուրաների ցանքի նորման պետք է բարձրացնել 4—5 տոկոսով։

Մեր երկրի առաջավոր կոլտնտեսություններում ցանքի այդ եղանակները, ցանքի սովորական շարքացան եղանակի համեմատությամբ, հեկտարի բերքատվությունը բարձրացնում են 4—5 ցենտներով։

Աշնանացան ցորենի բարձր և կայուն բերք ստանալու միջոցառումների կոմպլեքսում ոչ սակավ նշանակություն ունի ցանքի օպտիմալ խորության սահմանումը։ Եղած փորձնական տվյալների համաձայն, աշնանացան ցորենի սերմերը պետք է ցանվեն թեթև հողերում 6—8, ծանր հողերում՝ 5—6 սանտիմետր խորությամբ։

Ագրոտեխնիկայի ամեն մի եղանակի կիրառման դեպքում պետք է խուսափել շաբլոնից։ Անհրաժեշտ է ագրոնոմիական գիտությունից և առաջավորների պրակտիկայից բխող միջոցառումներն իրագործել դիֆերենցիալ կերպով, հաշվի առնելով այս կամ այն դաշտի, այս կամ այն հողամասի կոնկրետ առանձնահատկությունները։

# ՉԻՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՄԵԾ ՏՈՆԸ

## (Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի վեցերորդ տարեդարձի առթիվ)

Մ. ՅՈՒՐԵՎ

*Չին ժողովուրդը իր ժողովրդական պետության ստեղծման վեցերորդ տարեդարձը դիմավորում է հայրենասիրական մեծ վերելքի իրադրության մեջ։ Բանվորները, գյուղացիները, ինտելիգենցիան հսկայական խանդավառությամբ դիմավորեցին այս տարվա հուլիսի վերջին ժողովրդական ներկայացուցիչների Համաչինական ժողովի կողմից ՉԺՌ-ի ժողովրդական տնտեսության զարգացման 1953—1957 թվականների առաջին հնգամյա պլանի ընդունումը։ Չինական առաջին հնգամյակում առաջադրված խնդիրները նոր Չինաստանի յուրաքանչյուր քաղաքացու սիրտը համակում են ազգային հպարտության օրինական զգացումներով։*

*Ընդամենը վեց տարի է անցել այն պատմական օրից, երբ 1949 թվականի հոկտեմբերի 1-ին ընկեր Մաո Ցզե-դունը ազդարարեց նոր դարագլխի ծագումը չին ժողովրդի կյանքում։ Այդ կարճ ժամանակամիջոցում*



*արմատական փոփոխություններ են տեղի ունեցել Չինաստանում։*

*Հաղթական ժողովրդական ռևոլյուցիան ոչնչացրեց օտարերկրյա իմպերիալիստների տիրապետությունը և կիսաֆեոդալական, կիսագաղութային Չինաստանը դարձրեց անկախ ժողովրդա-դեմոկրատական պետություն, որին ղեկավարում է բանվոր դասակարգը՝ գյուղացիության հետ դաշնակցած։ Խոշոր արդյունաբերական և առևտրական ձեռնարկությունները, բանկերը, երկաթուղիները, որոնք առաջ գտնվում էին օտարերկրյա մոնոպոլիաների և նրանց հետ սերտորեն կապված չինական բուրժուազիայի վերնախավերի ձեռքում, դարձան համաժողովրդական սեփականություն։ Հողը, որի համար դարերով պայքարում էր չին գյուղացիությունը, խլվեց կալվածատերերից և հանձնվեց աշխատավոր գյուղացիներին՝ որպես սեփականություն։ Ագրարային մեծ վերափոխությունները վերացրին կալվածատերերի դասակարգը, որը չինական ռեակցիայի ամենաուժեղ հենարանն էր, ամրապնդեցին բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը, բարենպաստ պայմաններ ստեղծեցին արտադրողական ուժերի զարգացման համար։*

*Այդ պատմական վերափոխությունները*

կապանքներից ազատեցին և զարգացման
լայն ասպարեզ բացեցին 600 միլիոնանոց
չին տաղանդավոր ժողովրդի ստեղծագործա-
կան ուժերի համար։ Չինական ժողովրդա-
կան Ռեսպուբլիկայի գոյության առաջին
երեք տարում, 1949—1952 թվականներին,
վերականգնվեց երկրի էկոնոմիկան, որը
քայքայվել էր երկարատև պատերազմների
և օտարերկրյա իմպերիալիստների ու գոմին-
դանական կլիկի բազմամյա տիրապետու-
թյան հետևանքով։ Այդ հաջողությունը ձեռք
բերվեց Չինաստանի Կոմունիստական պար-
տիայի ճիշտ ղեկավարության, բանվորների
և գյուղացիների աշխատանքային խանդա-
վառության, Սովետական Միության և սո-
ցիալիստական լագերի մյուս երկրների եղ-
բայրական օգնության շնորհիվ։

Չինաստանի ժողովրդական տնտեսության
վերականգնումը պայմաններ նախապատ-
րաստեց 1953 թվականից անցնելու պլանա-
յին տնտեսական շինարարության։ Այն վիթ-
խարի խնդիրները, որոնք արտացոլված են
ՉԺՌ-ի տնտեսական զարգացման առաջին
հնգամյա պլանում, բխում են անցման շըր-
ջանում Չինաստանի Կոմունիստական պար-
տիայի վարած գլխավոր գծից, սոցիալիզմի
կառուցման կուրսից։ Ինչպես նշված է ՉԺՌ



Կոնստիտուցիայում, «Չինական Ժողովրդա-
կան Ռեսպուբլիկայի ստեղծումից հետո՝
մինչև սոցիալիստական հասարակարգի կա-
ռուցումն ընկած ժամանակաշրջանը, անց-
ման ժամանակաշրջան է։ Անցման ժամանա-
կաշրջանում պետության հիմնական խնդիր-
ներն են՝ աստիճանաբար իրագործել երկրի
սոցիալիստական ինդուստրացումը, աստի-
ճանաբար ավարտել սոցիալիստական վերա-
փոխությունները գյուղատնտեսության, տը-
նայնագործական արդյունաբերության, ինչ-
պես նաև կապիտալիստական արդյունաբե-
րության և առևտրի ասպարեզում»։

Սոցիալիզմի կառուցումը մի այնպիսի վիթ-
խարի երկրում, ինչպիսին Չինաստանն է,
որտեղ դեռ վերջերս իշխում էր կիսաֆեոդա-
լական կարգը, չափազանց բարդ գործ է և
պահանջում է լարել ժողովրդի բոլոր ուժերը։
Ինչպես նշում է ընկեր Մաո Ցզե-դունը, Չի-
նաստանում հիմնականում սոցիալիստական
հասարակարգ կառուցելու համար կպահանջ-
վի մոտավորապես երեք հնգամյակ՝ դրան
ավելացրած վերականգնման շրջանի երեք
տարիները։

Հին Չինաստանում արդյունաբերությունը
շատ թույլ էր զարգացած։ Ածխի հանույթը,
մետաղի, էլեկտրաէներգիայի արտադրու-

թյունը, մեքենաների թողարկումը չափազանց չնչին էին։ Օրինակ, 1949 թվականին երկրում ձուլվել է ընդամենը միայն 246 հազար տոննա չուգուն և 158 հազար տոննա պողպատ։ Այդ պատճառով էլ սոցիալիզմի կառուցման մեծ գործում վճռական նշանակություն ունի երկրի ինդուստրացումը և ամենից առաջ ծանր արդյունաբերության՝ մետալուրգիայի, վառելիքի արդյունաբերության, էներգետիկայի, մեքենաշինության, քիմիայի զարգացումը։ Առանց այդ ճյուղերի ստեղծման և առավել զարգացման հնարավոր չի լինի ո՛չ ամբողջ ժողովրդական տնտեսությունը հագեցնել ժամանակակից տեխնիկայով, ո՛չ գյուղատնտեսությունը վերակառուցել սոցիալիստական հիմունքներով, ո՛չ էլ ամրապնդել երկրի պաշտպանունակությունը։

Հնգամյա պլանի կատարումը խոշոր առաջընթաց քայլ կլինի Չինաստանի սոցիալիստական ինդուստրացման ճանապարհին։ Արդյունաբերական արտադրությունը հինգ տարում աճելու է գրեթե երկու անգամ, ընդորում արտադրության միջոցների արտադրությունն ավելանալու է 126,5 տոկոսով։ Առաջին հնգամյա պլանի համաձայն արդյունաբերության զարգացման համար բաց թողնվող բոլոր միջոցների գրեթե ինը տասներորդականը



(88,8 տոկոս) ծախսվելու է ծանր արդյունաբերության ձեռնարկությունների կառուցման և վերակառուցման վրա։ Այդ միջոցների մեծ մասն օգտագործվելու է Հյուսիս-Արևելյան Չինաստանի Անշանի մետալուրգիական կոմբինատի ցեխերի ու գործարանների ընդարձակման և նորերի կառուցման համար, մետալուրգիական երկու նոր կոմբինատների կառուցման, որից մեկը Բաոտոում (Ներքին Մոնղոլիա), իսկ մյուսը Ուխանիայի շրջանում (Կենտրոնական Չինաստան), 15 ջերմային էլեկտրակայանների կառուցման և Ֆինմանի հզորակայան հիդրոէլեկտրակայանի վերակառուցման համար (երկրի հյուսիս-արևելքում), նավթի և գունավոր մետաղների արտադրության ընդարձակման, երկու ավտոգործարանների կառուցման, որից մեկը կսկսի արտադրանք տալ այս հնգամյակի ընթացքում, մեկ տրակտորային գործարանի, ծանր մեքենաշինության երկու գործարանների, էլեկտրատեխնիկական արդյունաբերության ձեռնարկությունների կառուցման համար։

Կառուցվող խոշոր ձեռնարկությունների զգալի մասի շինարարությունն ավարտվելու է երկրորդ հնգամյակում, բայց արդեն 1957 թվականին խոշոր չափով աճելու է արդյու-

նաբերական արտադրությունը Չինաստանում։ Այսպես, 1957 թվականին պողպատի արտադրությունը կազմելու է չորս միլիոն 120 հազար տոննա, այսինքն՝ 1952 թվականի մակարդակը գերազանցելու է ավելի քան երեք անգամ, իսկ Հին Չինաստանում ձեռք բերված ամենաբարձր մակարդակը՝ 4,5 անգամ։ 1957 թվականին 2,2 անգամ շատ էլեկտրաէներգիա, 1,8 անգամ շատ ածուխ, 7,7 անգամ շատ գեներատոր, 1,6 անգամ շատ էլեկտրամոտորներ է արտադրվելու, քան 1952 թվականին։ 1957 թվականին արդեն կթողարկվի 4.000 բեռնատար ավտոմեքենա, որոնց արտադրությունը չի ունեցել Չինաստանը անցյալում, իսկ առաջին ավտոգործարանի շինարարության ավարտումից հետո տարեկան կարտադրվի 30 հազար բեռնատար ավտոմեքենա։

Հնգամյա պլանով նախատեսված է կառուցել նաև թեթև արդյունաբերության ձեռնարկություններ, այդ թվում՝ 39 խոշոր տեքստիլ ֆաբրիկա։

Առաջին հնգամյակի ընթացքում կառուցվելու են երկաթուղային մի շարք կարևոր մագիստրալներ, այդ թվում՝ Ցզինին—Էրլյան գիծը, որը Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան կապելու է Մոնղոլական Ժողո-



վրդական Ռեսպուբլիկայի հետ և ավելի քան 1.000 կիլոմետրով կրճատելու է Մոսկվայից Պեկին տանող ճանապարհը։ Շարունակվում է Լանչժոու—Ուրումչի—Ալմա-Աթա երկաթուղու շինարարությունը՝ ավելի քան 3.000 կիլոմետր երկարությամբ։ Այդ ճանապարհը նույնպես կապ է ստեղծելու Սովետական Միության և Չինաստանի միջև, ընդորում՝ դա Մոսկվայից Պեկին տանող ճանապարհը կրճատելու է 2.000 կիլոմետրով։ Նա անցնելու է Հյուսիս-Արևմտյան Չինաստանի նավթով, գունավոր մետաղներով և օգտակար այլ հանածոներով հարուստ անծայրածիր տարածություններով, օգնելով այդ երկրամասի վերածմանը խոշոր արդյունաբերական շրջանի։

Հյուսիս-Արևմուտքի, Հարավ-Արևմուտքի, Ներքին Մոնղոլիայի շրջաններում ծավալված տնտեսական մեծ շինարարությունը կհանգեցնի արդյունաբերության ավելի խելացի տեղաբաշխմանը ամբողջ երկրում, արդյունաբերական կենտրոնների մոտեցմանը հումքի աղբյուրներին, ինչպես նաև տնտեսական հիմք կստեղծի Չինաստանում ապրող բոլոր ազգությունների հավասարության համար։

Չինաստանում հսկայական ուշադրություն է դարձվում գետերի սանձահարման աշխա-



818-55

տանքին։ Արդեն մի քանի տարի է իրրիգացիոն մեծ աշխատանքներ են տարվում Խուայխե գետի վրա։ Խոշոր կոմպլեքսային միջոցառումներ են իրագործվում Չինաստանում իր մեծությամբ երկրորդ՝ Խուանխե գետի հորդացումները կանխելու և էներգիայի պաշարները յուրացնելու ուղղությամբ։ Չինաստանի մշակվող բոլոր հողերի 40 տոկոսը գտնվում է այդ գետի ավազանում։

Հնգամյակի ընթացքում Չինաստանում հերկվելու են հարյուր հազարավոր հեկտար խոպան հողեր, ընդ որում, այդ գործում վճռական դեր է խաղալու Սովետական Միության օգնությամբ ստեղծված և առաջավոր տեխնիկայով հագեցված «Բարեկամություն» պետական տնտեսությունը, որը յուրացնելու է 357 հազար մու խոպան հողեր (մուն հավասար է 1/16 հեկտարի)։

Մինչև հնգամյակի վերջը երկրի գյուղացիական տնտեսությունների (որոնց ընդհանուր թիվը կազմում է ավելի քան 110 միլիոն), մեկ երրորդը միավորվելու է կիսասոցիալիստական տիպի գյուղատնտեսական արտադրական կոոպերատիվներում։ Դա հնարավորություններ կստեղծի Չինաստանի գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման համար։ Տնայնագործական



արդյունաբերության արտադրանքի 38,6 տոկոսը տալու են տնայնագործների կոոպերատիվները։ Այդ նույն ժամանակամիջոցում մասնավոր արդյունաբերական ձեռնարկությունների մեծամասնությունը վերափոխվելու է խառը, պետական կապիտալիստական ձեռնարկությունների։ 1957 թվականին պետական, կոոպերատիվ և խառը ձեռնարկությունները տալու են չինական ամբողջ արդյունաբերական արտադրանքի 87,8 տոկոսը, իսկ մասնավոր կապիտալիստական ձեռնարկությունների բաժինը երկրի արդյունաբերական արտադրության մեջ կրճատվելու է և 1952 թվականի 39 տոկոսի փոխարեն 1957 թվականին կազմելու է 12,2 տոկոս։

Սոցիալիզմի ուղիով Չինաստանի զարգացումը հեշտանում է Սովետական Միության և սոցիալիստական լագերի մյուս երկրների եղբայրական օգնության շնորհիվ։ 694 խոշոր արդյունաբերական ձեռնարկություններից, որոնց կառուցումը կազմելու է Չինաստանի սոցիալիստական ինդուստրացման առաջին հիմքը, 156-ն ստեղծվում է Սովետական Միության օգնությամբ։ Նոր Չինաստանի ինդուստրացմանն օգնում են չեխոսլովակյան մեքենաշինարարները, ռումինական նավթագործները և ժողովրդական դե-

*մոկրատիայի երկրներից եկած մյուս մասնագետները։ Հնգամյակի ընթացքում նախատեսված է ՍՍՌՄ-ի օգնությամբ սկսել ատոմային էներգիայի խաղաղ օգտագործման հետ կապված շինարարությունը Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայում։*

*Նշանակալից են ժողովրդական Չինաստանի նվաճումները նաև կուլտուրական շինարարության ասպարեզում։ Բանվորները և գյուղացիները, նրանց երեխաները հնարավորություն են ստացել տիրապետելու մարդկային քաղաքակրթության գանձերին և, ամենից առաջ, նրա բարձրագույն նվաճմանը՝ մարքսիստական-լենինյան ուսմունքին։ Չինական բուհերում աշխատավորների զավակներից հարյուր հազարավոր մասնագետներ են պատրաստվում ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի համար։ Միլիոնավոր բանվորներ և տասնյակ միլիոնավոր գյուղացիներ գիտելիքներ են ձեռք բերում երեկոյան դպրոցներում։ Զարգանում են ժողովրդական գրականությունը և արվեստը։*

*Քաղաքական, տնտեսական և կուլտուրական շինարարության ասպարեզում չին ժողովրդի ձեռք բերած հաջողությունները ամրապնդում են Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի միջազգային հեղինակությունը։*



*Հինգ մեծ տերությունների՝ ՍՍՌՄ-ի, ՉԺՌ-ի, ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի արտաքին գործերի մինիստրների Ժնևյան խորհրդակցության փորձը (1954 թ.), որը հանգեցրեց պատերազմի դադարեցմանը Հնդկաչինում, Ասիայի և Աֆրիկայի երկրների Բանդունգում (Ինդոնեզիա) տեղի ունեցած կոնֆերենցիայի փորձը, որին մասնակցեցին Չինաստանը, Հնդկաստանը և տարբեր հասարակական կարգ ունեցող մյուս պետությունները, ցույց տվեցին Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի միջազգային կարևորագույն դերը։ Երկրների փոխհարաբերության այն հինգ սկզբունքները, որ առաջադրվել են Չինաստանի ու Հնդկաստանի կողմից և պաշտպանություն գտել Սովետական Միության, ժողովրդական դեմոկրատիայի երկրների և մի շարք այլ պետությունների կողմից, գնալով ավելի ու ավելի լայն ճանաչման են արժանանում՝ որպես բոլոր պետությունների, անկախ նրանց հասարակական կարգից, համագործակցության և գոյակցության բազայի։*

*Չին ժողովուրդը ջերմորեն սիրում է խաղաղությունը և ակտիվորեն պայքարում նրա պահպանման ու ամրապնդման համար։ Նա պատրաստ է նորմալ հարաբերություններ հաստատել ամեն մի պետության հետ՝ տերի-*

տորիալ ամբողջականության և սուվերենիտետի փոխադարձ հարգման, միմյանց վրա չհարձակվելու, միմյանց ներքին գործերին չմիջամտելու, հավասարության և փոխադարձ շահավետության, խաղաղ գոյակցության հիման վրա։ Այն, որ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան ձգտում է միջազգային լարվածության թուլացման, վկայում են, մասնավորապես, ներկայումս ժնևում տեղի ունեցող չին-ամերիկյան բանակցությունները։

Սակայն Չինաստանի խաղաղության ձգտումը ամենևին չի նշանակում, թե նա կարող է հրաժարվել իր օրինական ազգային իրավունքներից։ Ներկայումս Հեռավոր Արևելքում, Տայվանի շրջանում, դեռ մնում է այն լարվածությունը, որ առաջացել է այն բանի հետևանքով, որ ԱՄՆ-ը փաստորեն շարունակում է օկուպացնել այդ չինական կղզին, խանգարում է նրա ազատագրմանը։ Ինչպես ընդգծեց ընկեր Չժոու Էն-լայը ժողովրդական ներկայացուցիչների Համաչինական ժողովի 2-րդ սեսիայում արտասանած իր ճառում, չին ժողովրդի կողմից Տայվանի ազատագրման իր սուվերեն իրավունքների իրագործումը՝ դա Չինաստանի ներքին գործն է.

«Սառը պատերազմի» և «ուժի դիրքերից»



ելնող քաղաքականության ջատագովները, որոնք շարունակում են թունավորել միջազգային մթնոլորտը, խանգարել տարբեր պետությունների միջև բարեկամական նորմալ հարաբերություններ հաստատելու գործին, պընդում են Չինաստանի նկատմամբ իրենց տապալված քաղաքականությունը։ Բայց անդառնալիորեն անցել են այն ժամանակները, երբ Չինաստանի բախտը որոշում էին Վաշինգտոնում, Լոնդոնում, Տոկիոյում։

Այժմ Չինաստանը միջազգային հսկայական կշիռ ունեցող մեծ տերություն է։ Սովետական Միության հետ միասին Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան գլխավորում է սոցիալիզմի միասնական ու համախմբված ճամբարը, որը միավորում է երկրագնդի ամբողջ բնակչության ավելի քան մեկ երրորդը՝ 900 միլիոն մարդ։ Չին ժողովրդի ուժերն անսպառ են։ Նա տեսնում է իր պայծառ սոցիալիստական ապագան և պատրաստ է նրա համար պայքարել ամենայն հաստատակամությամբ, կորովով ու խանդավառությամբ, ինչպես վայել է ազատագրված ժողովրդին։

—

# ԻՆՉՊԵՍ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՎԵԼ ԶՐՈՒՅՑԻ

Վ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

Յուրաքանչյուր բարեխիղճ ագիտատոր ձգտում է լավ նախապատրաստել իր հերթական ագիտացիոն զրույցը, որպեսզի այն լինի հետաքրքիր ու բովանդակալից և ունկընդիրները գոհ մնան իրենից։ Ինչ խոսք, որ նա է հասնում իր նպատակին, ով նախապատրաստված է հանդիպում իր ունկնդիրներին, կատարելապես տիրապետում է զրույցի նյութին և սպառիչ պատասխաններ տալիս տըրված հարցերին։ Որքան էլ ագիտատորը փորձված լինի և բարձր պատրաստականություն ունենա, նա չպետք է հույսը դնի հիշողության վրա և առանց լուրջ նախապատրաստական աշխատանք կատարելու զրույցի հրավիրի ունկնդիրներին։ Հարկավոր է հիշել, որ անընդհատ բարձրանում է մեր այժմյան ունկընդիրների թե՛ քաղաքական և թե՛ գիտական ու կուլտուրական պատրաստականությունը։ Այդ է պատճառը, որ նրանք օրըստօրե ավելի պահանջկոտ են դառնում իրենց ագիտատորների նկատմամբ։



Որպեսզի ագիտատորը կարողանա լիովին բավարարել ունկնդիրների պահանջը, զրույցը նախապատրաստելիս, ամենից առաջ նա պետք է հաշվի առնի ունկնդիրների կազմը, նրանց փաստացի գիտելիքները, ագիտացիոն նյութը յուրացնելու նրանց կարողությունը և ապա նախապատրաստվի զրույցի։ Հաճախ, որոշ ագիտատորներ, առանց հաշվի առնելու թե ովքեր են ունկնդրելու իրենց, պատրաստում են զրույցը և ներկայանում ունկնդիրներին։ Հակառակ ագիտատորի սպասածին, զրույցի ընթացքում ուժեղ կապ չի ստեղծվում ունկնդիրների հետ, վերջիններս տհաճությամբ են լսում նրան։ Ինքնին հասկանալի է, թե ինչպիսի դառնություն է պատճառում այդ անախորժ հանգամանքը ագիտատորին։ Ուստի, ագիտատորը նախօրոք պետք է լավ գիտենա ունկնդիրների պատրաստականությունը, որպեսզի նրանց համար մատչելի լեզվով անցկացնի զրույցը։

Այդ տեսակետից աշխատանքի ուսանելի փորձ ունի Ստեփանավանի շրջանի Նորաշենի կոլտնտեսության ագիտատոր Գ. Բաղդասարյանը։ Նա շատ լավ գիտի, թե իր ունկնդիրները որ թեման ինչպես կյուրացնեն, նրանցից որին ինչպես պետք է պարզաբանել, ումը ինչ է հետաքրքրում։ Վերջերս,— ասում

է ագիտատոր Ծաղդասարյանը,— մեր կոլտնտեսության անասնապահական ֆերմայում, որտեղ աշխատում եմ ես, կթվորուհիների հետ զրույց ունեցա՝ «Ինչպես հասնել բարձր կաթնատվության» թեմայով։ Այդ զրույցից գոհ մնացին կթվորուհիները։ Նրանք մի շարք հարցեր տվեցին ինձ անասնաբուծության առաջավորների աշխատանքի փորձի մասին և որոշեցին աշխատել առաջավորների օրինակով։

Ի՞նչն էր այդ զրույցի հաջողության պատճառը։ Ամենից առաջ այն, որ ագիտատորը լավ իմանալով իր ունկնդիրների պահանջները և մանավանդ պատրաստականությունը, խնամքով նախապատրաստվել էր զրույցի, նախօրոք ընտրելով անհրաժեշտ թվեր և փաստեր, ցուցադրական ագիտացիոն նյութեր, տեղական օրինակներ և այլն։

Ունկնդիրների մոտ ագիտատորի հաջողության համար խոշոր նշանակություն ունի զրույցի բովանդակությունը։ Ընտրելով զրույցի համար համապատասխան թեմա, ագիտատորը պարտավոր է խորը և բազմակողմանիորեն ուսումնասիրել այն, հավաքել թվական և փաստական հարուստ տվյալներ, մի ընդհանուր սիստեմի վերածել իր ձեռքի տակ գտնված նյութերը, առաջիկա զրույցի



մասին տեղյակ պահել ագիտկոլեկտիվի ղեկավարին։ Շատ լավ կլինի, որ ագիտկոլեկտիվի նիստում պարբերաբար քննության ներկայացվի ագիտացիոն զրույցի պատրաստի տեքստը։ Դա կօգնի ագիտատորին ավելի լրջորեն վերաբերվել հանձնարարված գործի նկատմամբ, օգտվել ագիտատորների քննադատական դիտողություններից և ավելի որակյալ զրույց ունենալ ունկնդիրների հետ։ Բարեխիղճ ագիտատորները մեծ նշանակություն են տալիս ագիտկոլեկտիվի օգնությանը և հանգամանորեն ծանոթանում են լավագույն ագիտատորների աշխատանքի դրական փորձին։

Աշխատանքի հենց այդպիսի պրակտիկա ունի Երևանի Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի ձուլարանի ագիտատոր Հ. Աղամալյանը։ Բացի այն, որ նա խնամքով է նախապատրաստվում զրույցի, ամեն անգամ ունկնդիրներին հանդիպելուց առաջ ագիտկոլեկտիվի ղեկավարին տեղյակ է պահում իր առաջիկա զրույցի մասին, և խնդրում այն քննարկել ագիտկոլեկտիվի նիստում։ Օրինակ, ագիտատորի խնդրանքով, ագիտկոլեկտիվի նիստում քննության առնըվեց «Աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու մասին» զրույցը։ Ագիտատոր-

ների քննադատական դիտողություններից
հետո, ընկ. Աղամալյանը իր զրույցը լրացրեց
աշխատանքի արտադրողականությունը բարձ-
րացնելու վերաբերյալ իրենց գործարանից և
իր ցեխից վերցրած կոնկրետ օրինակներով
և ապա հանդես եկավ ունկնդիրների առաջ։
Ագիտացիոն զրույցի նախապատրաստվե-
լիս հարկավոր է խստապահանջ լինել նաև
լեզվի նկատմամբ։ Սովորաբար ունկնդիրնե-
րը ուշադրությամբ լսում են այն ագիտատոր-
ներին, որոնք խոսում են պարզ ու հասկանա-
լի, իրենց մտքերն արտահայտում են հակիրճ
և մանավանդ պատկերավոր։ Քիչ չեն այն
դեպքերը, երբ ագիտատորը վատ չի նախա-
պատրաստվում զրույցի, բայց երբ սկսում է
զրույցը, այն անցնում է անհետաքրքիր ու չի
տալիս ագիտատորի ցանկացած արդյունքը։
Այդ անհաջողության պատճառն այն է, որ
ագիտատորը լուրջ վերաբերմունք չի ունեցել
դեպի լեզուն, աշխատանք չի թափել, որ իր
խոսքերը լինեն արտահայտիչ, բազմազան,
պարզ ու հասկանալի բոլորին։ Ուշադրություն
չդարձնելով խոսքի կուլտուրային, բանավոր
խոսքը ճիշտ օգտագործելուն, զրույցը վե-
րածվում է շատախոսության, որը շատ շուտ
ձանձրացնում է ունկնդիրներին։
Զրույցի նախապատրաստվելիս, խոշոր



նշանակություն պետք է տալ նյութը մատու-
ցելու ձևին։ Միանգամայն ճիշտ են վարվում
փորձված այն ագիտատորները, որոնք ագի-
տացիոն զրույցներին տալիս են պատմելու
բնույթ։ Ինչպես հայտնի է, Մ. Ի. Կալինինը
խորհուրդ էր տալիս՝ դիմել պատմելուն.
«Գանգատվում են,— ասում էր նա,— թե
ձանձրույթ է տիրում... ժողովներում։ Այս
ձանձրույթը զգալիորեն կախում ունի նրա-
նից, որ մենք հրապուրիչ և հետաքրքիր հար-
ցերը մատուցում ենք... շատ չոր, մեծ մա-
սամբ խրատական տոնով... մինչդեռ ամե-
նաանհաջող մեթոդը խրատական մեթոդն է,
իսկ ամենալավ մեթոդը՝ պարզապես պատ-
մելու մեթոդն է»։ Պատմելու մեթոդը լավա-
գույն միջոց է ունկնդիրներին գրավելու,
նրանց ուշադրությունը տիրապետելու և
նրանց հետ ավելի ուժեղ կապ ստեղծելու հա-
մար։

Զրույցի նախապատրաստվելիս հարկավոր
է խելացիորեն օգտագործել նաև գեղարվես-
տական գրականությունը և մանավանդ ցու-
ցադրական միջոցները, ինչպես, օրինակ,
պլակատներ, քարտեզներ, ալբոմներ, դիա-
գրամաներ և այլն։ Ագիտատորի խոսքն ավե-
լի ազդեցիկ ու հետաքրքիր է լինում, երբ նա
իր զրույցը հարստացնում է գեղարվեստա-

ների քննադատական դիտողություններից հետո, ընկ. Աղամալյանը իր զրույցը լրացրեց աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու վերաբերյալ իրենց գործարանից և իր ցեխից վերցրած կոնկրետ օրինակներով և ապա հանդես եկավ ունկնդիրների առաջ։

Ագիտացիոն զրույցի նախապատրաստվելիս հարկավոր է խստապահանջ լինել նաև լեզվի նկատմամբ։ Սովորաբար ունկնդիրները ուշադրությամբ լսում են այն ագիտատորներին, որոնք խոսում են պարզ ու հասկանալի, իրենց մտքերն արտահայտում են հակիրճ և մանավանդ պատկերավոր։ Քիչ չեն այն դեպքերը, երբ ագիտատորը վատ չի նախապատրաստվում զրույցի, բայց երբ սկսում է զրույցը, այն անցնում է անհետաքրքիր ու չի տալիս ագիտատորի ցանկացած արդյունքը։ Այդ անհաջողության պատճառն այն է, որ ագիտատորը լուրջ վերաբերմունք չի ունեցել դեպի լեզուն, աշխատանք չի թափել, որ իր խոսքերը լինեն արտահայտիչ, բազմազան, պարզ ու հասկանալի բոլորին։ Ուշադրություն չդարձնելով խոսքի կուլտուրային, բանավոր խոսքը ճիշտ օգտագործելուն, զրույցը վերածվում է շատախոսության, որը շատ շուտ ձանձրացնում է ունկնդիրներին։

Զրույցի նախապատրաստվելիս, խոշոր



նշանակություն պետք է տալ նյութը մատուցելու ձևին։ Միանգամայն ճիշտ են վարվում փորձված այն ագիտատորները, որոնք ագիտացիոն զրույցներին տալիս են պատմելու բնույթ։ Ինչպես հայտնի է, Մ. Ի. Կալինինը խորհուրդ էր տալիս՝ դիմել պատմելուն. «Գանգատվում են,— ասում էր նա,— թե ձանձրույթ է տիրում... ժողովներում։ Այս ձանձրույթը զգալիորեն կախում ունի նրանից, որ մենք հրապուրիչ և հետաքրքիր հարցերը մատուցում ենք... շատ չոր, մեծ մասամբ խրատական տոնով... մինչդեռ ամենաանհաջող մեթոդը խրատական մեթոդն է, իսկ ամենալավ մեթոդը՝ պարզապես պատմելու մեթոդն է»։ Պատմելու մեթոդը լավագույն միջոց է ունկնդիրներին գրավելու, նրանց ուշադրությունը տիրապետելու և նրանց հետ ավելի ուժեղ կապ ստեղծելու համար։

Զրույցի նախապատրաստվելիս հարկավոր է խելացիորեն օգտագործել նաև գեղարվեստական գրականությունը և մանավանդ ցուցադրական միջոցները, ինչպես, օրինակ, պլակատներ, քարտեզներ, ալբոմներ, դիագրամաներ և այլն։ Ագիտատորի խոսքն ավելի ազդեցիկ ու հետաքրքիր է լինում, երբ նա իր զրույցը հարստացնում է գեղարվեստա-

կան գրականությունից ընտրած դրական կերպարներով, որոնք վառ կերպով դրսևորում են սովետական մարդու քաջարի աշխատանքը, ոգևորում ունկնդիրներին։ Ագիտատորի զրույցը ավելի պատկերավոր է լինում, երբ նա զրույցի ընթացքում խելացիորեն օգտագործում է ցուցադրական միջոցները։ Չի կարելի, օրինակ, զրույց անցկացնել ՍՍՌՄ միջազգային դրության մասին, առանց օգտագործելու աշխարհագրական քարտեզը, կամ զրույց անցկացնել ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության մասին, առանց օգտագործելու դիագրամաներ, ալբոմներ և ցուցադրական այլ միջոցներ։

Ագիտատորը պետք է հիշի, որ ագիտացիոն զրույց անցկացնելը լուրջ ու պատասխանատու աշխատանք է, և ամեն միջոց գործ դնի, որպեսզի գերազանց նախապատրաստությամբ հանդիպի իր ունկնդիրներին։

---

ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԻՑ

---

# ԿԱՏԱՐԵՑԻՆՔ ՀՆԳԱՄՅԱ ՊԼԱՆԸ


## Մ. ՉԻԼԻՆԳԱՐՅԱՆ

### Երևանի Մուլիտի գործարանի ինժեներ-տնտեսագետ


Մեր գործարանը դասվում է ռեսպուբլիկայի առաջավոր ձեռնարկությունների շարքը։ Իհարկե, դա ունի իր պատճառը։ Գործարանի կոլեկտիվը կարճ ժամանակի ընթացքում կուտակել է աշխատանքի հարուստ փորձ, որը հնարավորություն է տվել նրան հնգամյակով նախատեսված առաջադրանքները կատարելու ժամկետից վեց ամիս շուտ՝ 1955 թվականի հունիսի վերջին։

Մեր գործարանի հիմնական արտադրանքը մուլիտն է։ Դա բարձր հրակայնություն ունեցող (մինչև 1900 աստիճան) մի նյութ է, որն ստացվում է արտադրական եղանակով մի քանի տեսակ հանքահողերի և արտադրական նյութերի խառնուրդից, նրանց էլեկտրական վառարաններում ձուլելու պրոցեսում։

Շնորհիվ իր բարձր հրակայնության, մուլիտը գլխավորապես գործ է ածվում ապակու արդյունաբերության մեջ՝ ապակի ձուլող հր-

նոցների պատերն ու հատակը մուլիտով երեսպատելու համար։ Բացի այդ, վերջին տարիներս հաջող փորձեր են արվում մուլիտը օգտագործելու նաև դոմենյան և մարտենյան մետաղաձուլական վառարաններում, որի տըված տնտեսական օգուտը, համեմատած մյուս նյութերի հետ, չափազանց բարձր է։

Հաշվի առնելով զանազան բնագավառներում մեծ գործադրություն ներկայացնող մուլիտի աճող պահանջները, գործարանի դիրեկցիան, պարտիական, պրոֆմիութենական և կոմերիտական կազմակերպությունները հատկապես հնգամյակի այս վերջին երկու տարում լարեցին իրենց բոլոր ուժերը երկրին ավելի շատ արտադրանք տալու համար։ Նրանց ջանքերը իզուր չանցան։ Ժամկետից շուտ կատարվեց հնգամյակի պլանային առաջադրանքը և գերազանցվեց արտադրանքի 1940 թվականի մակարդակը՝ չորս անգամ։

Գործարանի կոլեկտիվը այդ հաջողություններին հասել է այնպիսի միջոցառումների շնորհիվ, ինչպիսիք են՝ արտադրության տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործումը, ձեռքի ծանր աշխատանքի փոխարինումը մեքենայականի, նոր տեխնիկայի արմատավորումը, աշխատանքի պաշտպանության ու տեխնիկայի անվտանգության պայմանների



և բանվոր-ծառայողների կուլտ-կենցաղային սպասարկման բարելավումը։ Վերոհիշյալ միջոցառումներից բացի, հատկապես վերջին տարիներում, մուլիտի որակական ու քանակական ցուցանիշները բարձրացնելու գործում կարևոր դեր խաղաց գործարանի ինժեներատեխնիկական անձնակազմի և ՍՍՌՄ ապակու արդյունաբերության ինստիտուտի աշխատողների միջև հաստատված սերտ կապը։ Այդ կապի շնորհիվ մենք հնարավորություն ունեցանք ուսումնասիրել և տիրապետել մուլիտի ստացման նոր և ավելի բարձր տեխնոլոգիային։ Այդ հանգամանքը միաժամանակ նպաստեց այն բանին, որ այժմ առաջին տեսակի արտադրանքը, նախորդ տարիների 75—80 տոկոսի փոխարեն կազմում է 95 տոկոս։

Հումքի կորուստների դեմ պայքարելու նպատակով գործարանում կազմակերպվել է արտադրական նոր ցեխ՝ հումքի մշակման և բրիկետացման ցեխ, որը զբաղվում է մեքենայական եղանակով մուլիտի բրիկետներ պատրաստելու գործով։ Արտադրության այս պրոցեսի կատարելագործումը հնարավորություն է տալիս ձուլելու ընթացքում ավելի քան յոթ անգամ կրճատել հումքի կորուստը և ստանալ մուլիտի հրակայուն ավելի լավ տե-

սալկներ, ինչպես, օրինակ, «Ցիրկոնոմուլիտ» և «բակոր» տեսակները: Ներկայումս մեկ տոննա մուլիտ ստանալու համար ծախսվում է 30,4 տոկոսով ավելի քիչ հումք, քան 1949 թվականին: Նախորդ հնգամյակի հետ համեմատած, վերջին չորս և կես տարում առաջին տեսակի մուլիտի արտադրանքը մեծ չափերով ավելացել է:

Վերջին տարիներս մուլիտի ձողերի հղկման ու նրա արտաքին տեսքի փայլեցման և հում նյութերի չորացման հատուկ ցեխերի ստեղծումը հնարավորություն տվեց նոր ավտոմատ մեքենաների օգնությամբ աշխատանքի արտադրողականությունը, 1952—53 թվականների համեմատությամբ, բարձրացնել կրկնակի չափով և խնայել մեծ քանակությամբ էլեկտրաէներգիա:

Խոսելով արտադրության աշխատատար պրոցեսների մեքենայացման և նոր տեխնիկայի արմատավորման մասին, պետք է ասել, որ այդ ուղղությամբ նույնպես զգալի աշխատանք ենք կատարել: Տասնյակ հազարավոր տոննաներով ստացվող հումքի բեռնաթափումը, փոխադրումը և պահեստավորումը, որ սկզբներում միայն մասնակի չափով էր մեքենայացված, ներկայումս ամբողջովին կատարվում է ժապավենային փոխա-



դրիչների ու ինքնաթափ ավտոների միջոցով, որոնք հնարավորություն տվեցին էապես բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը:

Արձագանքելով երկրի առաջավոր ձեռնարկությունների մեխանիզատորների կոչին, մեր գործարանի շատ բանվորներ վերջին ժամանակներս հանդես են եկել նաև մի շարք արժեքավոր այնպիսի առաջարկություններով, որոնց արմատավորմամբ, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելուց բացի, զգալիորեն թեթևացել է ձեռքով կատարվող աշխատատար պրոցեսների աշխատանքը: Այսպես, օրինակ, էլեկտրոմանտյոր Ս. Գասպարյանի էլեկտրական հոսանք հաղորդող նոր ավտոմատ մեխանիզմի ստեղծումը ոչ միայն հեշտացրեց ձուլող վարպետների ծանր աշխատանքը, այլև խոշոր չափով նպաստեց վառարանների արտադրողականության բարձրացմանը ու էլեկտրաէներգիայի խնայողությանը: Փականագործ Հ. Հովհաննիսյանի կողմից կլոր տեսակի կաղապարների ստեղծումը հնարավորություն տվեց լրիվին վերացնել մամլիչների պարապուրդը և բարձրացնել արտադրողականությունը 15 տոկոսով:

Հնգամյա պլանը ժամկետից շուտ կատա-

բելուն նպաստեց նաև այնպիսի մի կարևոր հանգամանք, ինչպիսին կադրերի պատրաստումն ու վերապատրաստումն է։ Գործարանում աշխատող գրեթե բոլոր բանվորներն ընդգրկված են տեխնիկական ուսուցման խմբակներում, ուր ստանալով համապատասխան որակավորում, ավելի հեշտ են տիրապետում նոր տեխնիկան, ավելի ու ավելի մասնագիտանում իրենց վստահված աշխատանքի մեջ։ Տեխնիկական ուսուցման խմբակը վերջացնելուց հետո երիտասարդ մուլիտագործ Պետրոս Հովսեփյանը առաջ քաշվեց և ներկայումս աշխատում է որպես ձուլողների երկրորդ բրիգադայի բրիգադիր։ Նա իր արտադրական ցուցանիշներով արդեն գերազանցել է ավելի փորձառու մի շարք բրիգադիրների, այդ թվում՝ իրեն սովորեցնող վարպետ Վ. Սիմոնյանին։ Պ. Հովսեփյանի օրինակը մեր գործարանում եզակի չէ։ Արտադրության առաջավորների ցուցակը անցնում է մի քանի տասնյակ մարդուց։ Դրանք մեր գործարանի այն ոսկե ֆոնդն են, որոնց համերաշխ ու քրտնաջան աշխատանքի շնորհիվ մենք կարողացանք վերջին ութ ամսում համախառն արտադրանքի պլանը կատարել 109,1 տոկոսով, մուլիտի թողարկմանը՝ 108, աշխատանքի արտադրողականության աճինը՝



11,6, ինքնարժեքի իջեցմանը՝ 7,4 տոկոսով, միաժամանակ խնայելով 78.400 կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա և զանազան նյութերի խնայման հաշվին տնտեսել 280.000 ռուբլի։

Կենսագործելով ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Հուլիսյան պլենումի որոշումները, գործարանի կոլեկտիվը ի պատիվ պարտիայի 20-րդ համագումարի ստանձնել է լրացուցիչ նոր պարտավորություններ, որոնք կատարում է մեծ եռանդով։ Վերջին մի քանի ամսում, բանվորների պահանջով բրիգադային գործավարձը անհատական գործավարձով փոխարինվելուց հետո, բանվորների արտադրողականությունը բարձրացել է 40—50 տոկոսով, համեմատաբար ավելացել է նաև թողարկվող արտադրանքի քանակը։ Մեր մուլիտագործները այժմ պայքարում են մինչև տարվա վերջը, հնգամյա պլանից դուրս, երկրին տալ երեք միլիոն ռուբլու բարձրորակ արտադրանք։ Անտարակույս է, որ մենք պատվով կկատարենք մեր խոստումը։ Սակայն այդ դեռ բոլորը չէ։ Այժմվանից մեծ աշխատանք է տարվում եկող՝ 1956 թվականին ավելի բարձր ցուցանիշների հասնելու համար։ Արդեն ստացվել է և շուտով կտեղադրվի երեք ֆազանի մի նոր հզոր էլեկտրավառարան, որը կրկնակի շատ արտադրանք կթողարկի,

*քան ներկայումս մեզ մոտ գործող վառարաններից յուրաքանչյուրը։ Հումքի և պատրաստի արտադրանքի փոխադրումները հեշտացնելու նպատակով շահագործման կհանձնվեն նորագույն տիպի հինգ նոր էլեկտրաքարշեր։ Նախատեսվում է ներկայիս մամլիչ և մուլտ հղկող մեքենաները փոխարինել ավելի կատարելագործված մեքենաներով։ Հատուկ աշխատանք է տարվում 1956 թվականից հիմնովին անցնելու մուլտի ավելի հրակայուն՝ «բակոր» տեսակի արտադրանքին, որը բացի ապակու արդյունաբերության մեջ օգտագործվելուց, մասսայական կիրառում կգտնի նաև մետաղաձուլական արդյունաբերության մեջ։*

---



# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԵՎ ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՖԵԴԵՐԱԼ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԿԱՌԱՎԱՐԱԿԱՆ ԴԵԼԵԳԱՑԻԱՆԵՐԻ ԲԱՆԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Երևանի № 6 տպարանի ագիտկոլեկտիվի ղեկավար Է. Շահինյանը խնդրել է խմբագրությանը տպագրել հոդված Սովետական Միության և Գերմանական Ֆեդերալ Ռեսպուբլիկայի կառավարական դելեգացիաների բանակցությունների մասին

*Սովետական Միության նախաձեռնությամբ 1955 թվականի սեպտեմբերի 9-ից մինչև 13-ը Մոսկվայում բանակցություններ տեղի ունեցան ՍՍՌՄ կառավարական դելեգացիայի և ԳՖՌ-ի կառավարական դելեգացիայի միջև։ Բանակցություններին նախորդեց նոտաների փոխանակություն Սովետական Միության և Գերմանական Ֆեդերալ Ռեսպուբլիկայի կառավարությունների միջև։ Սույն թվականի հունիսի 7-ի նոտայում ՍՍՌՄ կառավարությունը մատնանշում էր, որ խաղաղության ու եվրոպական անվտան-*

գության շահերը, հավասարապես նաև սովետական ու գերմանական ժողովուրդների ազգային շահերը պահանջում են երկու երկրների հարաբերությունների նորմալացում։

Հայտնի է, որ Սովետական Միությունը երկրորդ համաշխարհային պատերազմի ավարտումից հետո, առանց տատանվելու, դիմեց գերմանական ժողովրդի հետ բարիդրացիական հարաբերությունների հաստատման։ ՍՍՌՄ-ի և Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի միջև հաստատվեցին այնպիսի համագործակցություն և բարեկամական հարաբերություններ, որոնք ներկայումս հաջողությամբ զարգանում են իրավահավասարության և միմյանց ներքին գործերին չմիջամտելու ամուր հիմքի վրա։

ՍՍՌՄ-ի և Գերմանիայի միջև պատերազմի վիճակը դադարեցնելու և նրանց միջև խաղաղ հարաբերություններ հաստատելու վերաբերյալ ՍՍՌՄ Գերագույն Սովետի կողմից ընդունված որոշումն էլ նպաստավոր պայմաններ ստեղծեց Սովետական Միության և Գերմանական Ֆեդերալ Ռեսպուբլիկայի հարաբերությունների նորմալացման համար։

ՍՍՌՄ-ի և ԳՖՌ-ի միջև դիվանագիտական հարաբերություններ հաստատելու վերաբեր-



յալ բանակցությունները տեղի ունեցան փոխըմբռնման ոգով, այն նույն ոգով, որ հանդես բերեցին Զորս տերությունների կառավարությունների ղեկավարների Ժնևի խորհրդակցության մասնակիցները և որն ապահովեց այդ խորհրդակցության հաջողությունը։ Մոսկվայի բանակցությունները, հակառակ որոշ ռեակցիոն քաղաքագետների կարծիքի, որոնք նախանշում էին նրանց ձախողումը, ավարտվեցին դրական մեծ արդյունքներով։ Բանակցությունների շնորհիվ համաձայնություն ձեռք բերվեց դիվանագիտական հարաբերություններ հաստատել երկու երկրների միջև, այդ նպատակով դեսպանություններ հիմնել համապատասխանորեն Բոննում ու Մոսկվայում և փոխանակել Արտակարգ և լիազոր դեսպանների աստիճանի դիվանագիտական ներկայացուցիչներ։ Այդ համաձայնագիրը ուժի մեջ է մտնում այն օրվանից, երբ այն կհաստատվի ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության և Ֆեդերալ կառավարության Բունդեստագի կողմից։

Բանակցությունների վերջում տեղի ունեցավ նամակների փոխանակում Սովետական կառավարական դելեգացիայի ղեկավար, ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ

Ն. Ա. Բուլգանինի և ԳՖՌ-ի կառավարական դելեգացիայի ղեկավար, ֆեդերալ կանցլեր Կ. Ադենաուերի միջև։ Այդ նամակներում ասված է, որ ներկայումս հաստատվող դիվանագիտական հարաբերությունները կնպաստեն Սովետական Միության և Գերմանական ֆեդերալ Ռեսպուբլիկայի փոխըմբռնման ու համագործակցության զարգացմանը՝ հօգուտ խաղաղության և անվտանգության շահերի։

Ընկեր Ն. Ա. Բուլգանինի նամակում ասվում է. «Սովետական Միության և Գերմանական Ֆեդերալ Ռեսպուբլիկայի միջև նորմալ հարաբերությունների հաստատումն ու զարգացումը կնպաստեն ամբողջ Գերմանիային վերաբերող չկարգավորված հարցերի լուծմանը և դրանով իսկ կօգնեն գերմանական ժողովրդի համազգային գլխավոր պրոբլեմի լուծմանը՝ Գերմանական Դեմոկրատական պետության միասնության վերականգնմանը»։

Բանակցությունների հետևանքով պայմանավորվածություն ձեռք բերվեց նաև այն մասին, որ մոտ ժամանակներս Սովետական Միության և Գերմանական Ֆեդերալ Ռեսպուբլիկայի միջև կքննարկվեն առևտրի զարգացման հարցերը։



Այսպիսով, Մոսկվայի բանակցությունների հետևանքով ստեղծվեց այն հիմքը, որի վրա կկառուցվի երկու պետությունների բարեկամական համագործակցությունը։

Մոսկվայի բանակցությունների ժամանակ խոսվեց նաև Գերմանիայի վերամիավորման պրոբլեմի և դրա հետ կապված այլ հարցերի մասին։ Ինչպես Ժնևի Չորս տերությունների ղեկավարների խորհրդակցությունում, այնպես էլ Մոսկվայի բանակցությունների ժամանակ սովետական կառավարական դելեգացիան հիշեցրեց, որ գերմանական հարցի լուծման համար անհրաժեշտ է նոր մոտեցում։

Ի՞նչն է նորը գերմանական հարցում։ Դա այն է, որ Փարիզի համաձայնագրերի ուժի մեջ մտնելուց հետո Գերմանիայի վերամիավորման հարցը բարդացել է։ Գերմանական Ֆեդերալ Ռեսպուբլիկան մտել է ռազմական խմբավորման մեջ և կանգնել միլիտարիզացիայի ուղու վրա։ Մյուս կողմից Արևմտյան Գերմանիայի միլիտարիզացիան Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկային ստիպեց մտածելու իր սեփական անվտանգության մասին։ Նա միացավ եվրոպական ութ երկրների Վարշավայի պայմանագրին, որը

կնքվել է Փարիզի համաձայնագրերի վավերացումից հետո:

Սովետական կառավարությունը, ելնելով Եվրոպայի անվտանգության ու խաղաղության ամրապնդման շահերից, արևմտյան տերություններին բազմիցս առաջարկում էր քննարկել Գերմանիայի վերամիավորման հարցը: Սակայն այն ժամանակ Արևմուտքում իշխում էին «ուժի դիրքերից ելնող» քաղաքականության դոգմաները և սովետական առաջարկներին հակադրվեցին Գերմանիայի երկու մասերի մեխանիկական միաձուլման ու նրանց արևմտյան ռազմական խմբավորման մեջ ներգրավելու պահանջները:

Սովետական Միությունը, որին պաշտպանում էին շատ ուրիշ երկրներ, չէր կարող համաձայնվել այդ պլանին, քանի որ այն չէր արտահայտում ոչ եվրոպական ժողովուրդների և ոչ էլ գերմանական ժողովրդի շահերը: Գերմանիայի երկու մասերի մեխանիկական միաձուլման պլանը այժմ առավել ևս անընդունելի է, քանի որ այդ երկու մասերը դարձել են պետությունների տարբեր խմբավորումների անդամներ:

Սակայն, արդյո՞ք այդ նշանակում է մերժել գերմանական ժողովրդին՝ ունենալու իր



ազգային միասնությունը: Ո՛չ, չի նշանակում: Սովետական կառավարությունը,— ասել է ընկեր Բուլգանինը Ժնևի խորհրդակցությունում,— եղել է և մնում է Գերմանիայի միավորման կողմնակից, համաձայն Եվրոպայի անվտանգության ու գերմանական ժողովրդի ազգային շահերի: Գերմանիայի միավորումը, որպես խաղաղասեր և դեմոկրատական պետություն, հսկայական նշանակություն կունենար խաղաղության գործի համար ինչպես Եվրոպայում, այնպես էլ հենց գերմանական ազգի համար, որին պատերազմներն առաջին անգամը չէ որ ծանր զոհեր ու ավերածություններ են պատճառել: Այն գերմանական ժողովրդի առջև լայն հնարավորություններ կբացեր երկրի էկոնոմիկայի ու կուլտուրայի զարգացման համար, բնակչության բարգավաճման համար:

Սովետական կառավարության կողմից ներկայացված Եվրոպայի կոլեկտիվ անվտանգության համաեվրոպական պայմանագրի նախագիծը ելնում է այն բանից, որ առաջիկայում, մինչև միասնական, խաղաղասեր, դեմոկրատական գերմանական պետության ստեղծումը, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան և Գերմանական Ֆեդերալ Ռեսպուբլիկան պետք է լինեն պայ-

մանագրի իրավահավասար մասնակիցներ։ Ընդորում հաշվի է առնվում, որ Գերմանիայի միավորումից հետո ընդհանուր հիմունքներով պայմանագրի անդամ պետք է լինի միասնական գերմանական պետությունը։

Ձգտելով արագացնել գերմանական հարցի լուծումը, Սովետական կառավարությունն առաջարկում է հենց իրենց՝ գերմանացիներին ներգրավվել խաղաղության ու Եվրոպայի անվտանգության համար մղվող ակտիվ համագործակցության մեջ։

Արևմտագերմանական որոշ քաղաքագետներ ու հրապարակախոսներ պնդում են, որ Եվրոպական կոլեկտիվ անվտանգության սիստեմի ստեղծումը իբր թե կդժվարացնի Գերմանիայի վերամիավորումը։

Գերմանական պրոբլեմը չի կարելի լուծել առանց հաշվի չառնելու թե՛ Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի և թե՛ Գերմանական Ֆեդերալ Ռեսպուբլիկայի շահերը։

Սովետական Միության և Գերմանական Ֆեդերալ Ռեսպուբլիկայի կառավարական դելեգացիաների բանակցությունների հաջող ավարտումն ու նրանց դրական արդյունքները խորին գոհունակությամբ են ընդունում բոլոր խաղաղասեր ժողովուրդները և ամենից



առաջ սովետական ու գերմանական ժողովուրդները։

Մոսկվայի բանակցությունները մեկ անգամ ևս ցույց տվեցին Սովետական կառավարության լենինյան արտաքին խաղաղասիրական քաղաքականության մեծ նշանակությունը։ Այդ բանակցությունների արդյունքները նոր ուժով ամբողջ աշխարհին ցույց են տալիս, որ Սովետական Միությունը հետևողականորեն պայքարում է միջազգային լարվածության հետագա թուլացման՝ բոլոր երկրների հետ, անկախ նրանց սոցիալական սիստեմների տարբերությունից, գործարար համագործակցությունն ընդլայնելու համար։

Մոսկվայի բանակցությունների ժամանակ ընկեր Ն. Ս. Խրուշչևը հայտարարեց, որ «Սովետական կառավարությունը մի նպատակ ունի՝ ապահովել ամբողջ աշխարհի խաղաղությունը։ Մենք բարեկամական հարաբերությունների հաստատումից բացի, այլ ուղիներ չենք որոնում և մենք չենք ուզում, որ այդ հարաբերությունները ուղղված լինեն մյուս պետությունների՝ Անգլիայի, Ֆրանսիայի, Միացյալ Նահանգների դեմ, կամ որևէ այլ պետության դեմ։ Մենք գտնում ենք, որ դա մեր քաղաքականությունը չէ։ Սովետական Միությունը ցանկանում է

ԳՖՌ-ի հետ հաստատել նորմալ բարեկամական հարաբերություններ և մենք ուզում ենք նույնպիսի հարաբերություններ հաստատել մեր պետության և Մեծ Բրիտանիայի միջև, մեր պետության և Ֆրանսիայի միջև, մեր պետության և Ամերիկայի Միացյալ Նահանգների միջև, և աշխարհի մյուս բոլոր երկրների հետ»։

Սովետական Միության և Գերմանական Ֆեդերալ Ռեսպուբլիկայի հարաբերությունների նորմալացումը լիովին համապատասխանում է ինչպես սովետական ժողովրդի շահերին, այնպես էլ գերմանական ժողովրդի շահերին։

ՍՏ. ՍՏԵՓԱՆՅԱՆ

## ՈՒՂՂՈՒՄ

«Ա. բ.»-ի նախորդ համարում տպագրված տեղեկատու բաժնի 44-րդ էջում, վերևից ներքև, 17-րդ տողի վերջակետից հետո կարդալ. «Ինչպես հայտնի է, հնդիկ ժողովուրդը 1947 թվականին իր վրայից թոթափեց գաղութային լուծը և 1950 թվականին երկիրը հռչակեց ռեսպուբլիկա»։ Այնուհետև կարդալ այնպես, ինչպես տեքստում է։

---

## СОДЕРЖАНИЕ

Стр.




Խմբագիր՝ Գ Ր. ՊԵՏՐՈՍՅԱՆ




**ԲԱՑՎԱԾ Է**

**,,ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ''-Ի**

1955 թվականի

հոկտեմբեր, նոյեմբեր և դեկտեմբեր

ամիսների

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ**

*ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ*

3 ամիսը— 3 ռ.,

1 համարը—50 կոպեկ:

**«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»**

Отдел Пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА

№ 18 1955 г.

*ՎՖ 12675* *Պատվեր 802* *Տիրաժ 8800*

*ՀՍՍՌ Կուլտ. մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8, 1955 թ., գինը 50 կոպ.:*